ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃԶԵ.

# ԵՒԿԼԻԴԵԱՅ

## ԳԻՐՔ ՅԱՂԱԳՍ ՏԱՐԵՐԱՑ ԵՐԿՐԱՉԱՓՈՒԹԵԱՆ

ԲՆԱԳԻՐ ԵՒ ՔՆՆՈՒԹԻՒՆ

ԳՐԵՑ

Հ. ՆԵՐՍԷՍ Վ. ԱԿԻՆԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1960

# EUKLIDS ELEMENTE
## (FRAGMENT)
## IN ARMENISCHER ÜBERSETZUNG

VON

P. N. AKINIAN

MECHITHARIST



WIEN

MECHITHARISTEN-BUCHDRUCKEREI

1959

# ԵՒԿԼԻԴԵԱՅ

## ԳԻՐՔ ՅԱՂԱԳՍ ՏԱՐԵՐԱՑ ԵՐԿՐԱՉԱՓՈՒԹԵԱՆ

ԲՆԱԳԻՐ ԵՒ ՔՆՆՈՒԹԻՒՆ

ԳՐԵՑ

Հ. ՆԵՐՍԷՍ Վ. ԱԿԻՆԵԱՆ
ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ





ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1959

## ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

Եւկլիդեայ Տարերաց հայերէն թարգմանութիւնը հրատարակած էի Ներածութեամբ մը «Հանդէս Ամսօրեայ»ի մէջ, 1937, էջ 225—242:

Իմ տեսութիւններս ապա ենթարկուեցան քննութեան: Այս առիթ տուաւ ինձ միւս անգամ խօսք առնելու յօդուածով մը, նոյն Ուսումնաթերթին մէջ, 1956, էջ 210–217:

Այժմ այս երկու յօդուածները հատորիկիս մէջ տակաւին լոյս չտեսած, հասաւ ձեռքս նոր հրատարակութիւն մը՝ Գ. Բ. Պ ե տ ր ո ս ե ա ն, Մաթեմատիկան Հայաստանում հին եւ միջին դարերում. Երեւան 1959:

Հեղինակը տեղ շնորհած է հոն Եւկլիդեայ Տարերաց հայերէն թարգմանուած հատուածին: Իրեն ծանօթ եղած է իմ հրատարակութիւնս, որուն բնագիրը ներս առած է, թարգմանած զայն աշխարհաբարի, տուած է յունարէնը եւ անոր նոր Պետրոսեան թարգմանութիւնը:

Հայերէն բնագրի թարգմանիչը կը համարի Գրիգոր Մագիստրոս: Անծանօթ մնացած է իրեն իմ երկրորդ յօդուածս:

Շնորհապարտ կը թողու զմեզ Պետրոսեանն, երբ կը ներկայեցնէ մեզ Երեւանի Մատենադարանի Թ. 4166 ձեռագրէն (ԺԳ. դարէն), Եւկլիդեայ վերջին էջը յուսատիպ։

Էջիս յուսանքի վրայ, ուր կ'աւարտի Եւկլիդի հատուածը կը կարդանք.

Թվ. Փրկ. ՉՂԷ.
եւ Հայոց ՄԽԴ։

Այսինքն ի թուականութեան Փրկչի 797—2 = 795 եւ ի Հայոց թուականութեան 244 + 551 = 795։

Ինձի կը թուի թէ այս 795 թուականը թարգմանիչի կը պատկանի, որ իր անունը թաքցնելով թարգմանութեան տարին նշանակած է։

6 Յունուարի 1960։

ՀԵՂԻՆԱԿԸ

# ԵՒԿԼԻԴԵԱՅ

## ԳԻՐՔ ՅԱՂԱԳՍ ՏԱՐԵՐԱՑ ԵՐԿՐԱՉԱՓՈՒԹԵԱՆ

1. *Եւկլիդէս* (*Εὐκλείδης*), *որուն ծննդավայրն անծանօթ է, ծաղկած է Պտղոմէոս Եղբայրասէրի օրով* (285—247). *կը դասախօսէր յԱղեքսանդրիա: Ստեղծագործող միտք մը չէր Եւկլիդէս, բայց գիտցաւ իր նախորդներու տեսութիւնները ենթարկել յօրինուածական դասաւորութեան*[1]: *Իր նշանա-*

---

[1] *Եւկլիդեայ անձին եւ գրուածոց մասին տե՛ս* Christ-Schmid, Geschichte der griechischen Literatur, II, 1 (München 1920), *էջ* 273—276: *Եւկլիդեայ գրուածքը գեղեցկօրէն հիւսած է ԺԸ. դարու հայ երկրաչափ մը, որուն տողերն են յաջորդս. «Իբր* 300 *ամօք յառաջ քան զՔրիստոս, յարեաւ գերապանծ երկրաչափն Եւկղիդէս Աղեքսանդրացին, այր ի նրբութեան մտաց եւ ի հանճար նորագտութեան սքանչելի: Սա զօրէն քաղցրավաստակ մեղուաց անխոնջ երկասիրութեամբ՝ որ ինչ միանգամ ի գիրս իմաստասիրաց նախ քան զինքն ծաղկելոց երկրաչափական ճառք էին եւ գիտք, ի մի բճիճ մատենի հաւաքեալ ամբարեաց. եւ յիւրմէ եւս բազում նախադասութիւնս, եւ յոլովագոյն եւս ապացուցութիւնս յաւել, միանգամայն եւ գեղեցիկ իմն պարտուպատշաճ կարգաւ յերիւրեաց զնոսին, որով ոչ սակաւ հորդեաց զշաւիղ ուսման նորա գիտութեանս, զի իբր ոսկեղէն իմն շղթայ աղխաղխեաց ընդ միմեանս զսկզբունս եւ զնախադասութիւնս. որով իմաստք նոցին զմիմեանս ունին եւ միմեանց զհետ գան, եւ այսու գործով մեծապատիւ եւ*

ւոր գործն է στοιχεῖα, «տարերք» անուանուած երկրաչափական–ուսողական աշխատասիրութիւնը, բաժնուած 13 գրքերու, որոնց բովանդակութիւնն է. Ա—Զ գիրք՝ Հարթաչափութիւն, Է—Թ՝ Թուաբանութիւն, Ժ՝ Քանիօնութիւն, ԺԱ—ԺԳ՝ Հաստատաչափութիւն:

Եւկլիդէսի այս աշխատութիւնը երկար ժամանակ երկրաչափութեան դասագիրք գործածուեցաւ նախ Յոյներու, ապա՝ Ը. դարէն սկսեալ Արաբացիներու քով: Բոէտիոս թարգմանեց զայն լատիներէնի եւ այսպէս նաեւ Արեւմուտք տարածուեցաւ: Այնուհետեւ լոյս տեսան նաեւ նորագոյն լեզուներով թարգմանութիւններ:

Յունարէն բնագրին առաջին տպագրութիւնը տուաւ S. Grynaeus ի Բազէլ 1553ին: Անտեսելով գործիս զանազան տպագրութիւնները՝ յիշենք հոս J. L. Heibergի եւ H. Mengeի քննական հրատարակութիւնը 7 հատորի մէջ, լոյս տեսած 1883—1889 տարիներուն ի Լայպցիգ: Ութերորդ հատոր մ'ալ աւելցաւ անոնց վրայ 1916ին, որ կ'ամփոփէր իւր ծոցը նոյն մատենագրին վերագրուած զանազան գործերը:

2. Ինչպէս Լատինք եւ Արաբք, նոյնպէս մեր նախնիք հոգ տարած են թարգմանել

---

մեծանուն հանդիսացաւ, եւ իբր գլուխ եւ իշխան երկրաչափից եւ առաջին հանդիսացուցիչ գիտութեանս պատուի» (Հ. Սահակ Վ. Պռնեան, Երկրաչափութիւն, Վենետիկ 1794, էջ 19):

Եւկլիդեայ Երկրաչափութիւնը: Այս մասին առաջին ակնարկութեան կը պատահինք իմաստասիրական գրականութեան սիրահար Գրիգոր Մագիստրոսի Թղթերուն մէջ: Սա իւր առ Սարգիս վարդապետ գրած թղթին մէջ՝ իրեն համար ընտանի, իսկ մեզ համար խրթնաբան ոճով այսպէս կ՚արտայայտուի Եւկլիդեայ գրուածքիս հայերէն թարգմանութեան մասին[2].

«Վասն զի ոչ եմք երբեք դադարեալ ի թարգմանութենէ եւս. բազում մատեանս, զորս ոչ եմք գտեալ ի մեր լեզուս՝ զերկուս մատեանսն Պղատոնի, զՏիմէոսի տրամաբանութեանն եւ զՓեդոնին, յորս բոլոր ճառսն նախագիտականին այն պարփակեալ կայ, եւ զայլս բազումս յիմաստասիրացն. իւրաքանչիւր մատեանքս այս մեծագոյն է քան զՏաբեւոր տօնականս, բայց եւ գտեալ մեր իսկ ի հայ լեզու գրեալ թարգմանչացն զգիրս Ողոմպիոդորոսի, զոր Դաւիթ յիշատակէ, կարի յոյժ սքանչելի եւ հրաշալի բանաստեղծութիւնս մակաւասար բոլոր իմաստասիրական բանից. գտեալ եմ եւ զԿալիմաքոսի եւ զԱնդրօնիկեայն ի հայ լեզու. բայց եւ զԵրկրա-

---

[2] Գրիգոր Մագիստրոսի Թղթերը. հրտ. Կ. Կոստանեանց. Աղեքսանդրապօլ 1910, էջ 66 (Թուղթ ԻԱ.): Յառաջբերութիւնս Կոստանեանցի հրատարակութեան համաձայն է. նոյնպէս ունին նաեւ Վիեննայի եւ Միւնխէնի օրինակները: Տես նոյնը նաեւ M. Leroy, Gregoire Magistros et les traductions arméniennes d'auteurs grecs, p. 279—281:

չափականն զԵւկլիդոսին սկսայ թարգմանել․ եւ եթէ տակաւին կամեսցի Տէր երկարանալ մեզ ի կենցաղումս, բազում հոգս յանձին կալեալ զմնացեալսն բոլոր Յունաց եւ Ասորւոց թարգմանել ոչ դանդաղեցայց»։

Հատուածիս պարբերութիւնը՝ «բայց եւ զԵրկրաչափականն զԵւկլիդոսին սկսայ թարգմանել», բնականաբար կասկածի տեղիք պիտի չթողուր ընթերցողներուն, թէ Եւկլիդոսի Երկրաչափականին թարգմանիչը ուրիշ մը քան Գրիգոր Մագիստրոս եղած ըլլայ։ Այսպէս ալ հասկցուած է Մագիստրոս առ հասարակ ամէնէն։ Այս բազմահանգոյց հատուածիս ուշադիր ընթերցումը, սակայն, պէտք է պահանջէր ընթերցողներէն նախ լուսաբանութիւն բնագրին եւ ապա մեկնութիւն իմաստին։ Որչափ ալ խրթնաբան արտայայտութեանց սիրող է Մագիստրոս, բայց եւ այնպէս չեմ կրնար հաւատալ, թէ հատուածս այս ձեւի մէջ դուրս ելած ըլլայ իր մտածողութենէն։ Ինձ կը թուի թէ հատուածս, ըլլայ գրչագիրներու անուշադրութեամբ, ըլլայ ուրիշ պատճառով, կրած է խանգարում, աւելի ճիշդ տողերու ետեւառաջութիւն․ ուստի եւ կը կարօտի վերականգնման։ Ես կ՚առաջարկեմ կարդալ այսպէս․

ա․ «Ոչ եմք երբեք դադարեալ ի թարգմանութենէ։ գ․ Բայց եւ գտեալ <ի> մեր խակ ի հայ լեզու գրեալ <ի> թարգմանչացն՝ զգիրս Ողոմպիոդորոսի, զոր Դաւիթ յիշա-

տակէ[3], կարի յոյժ սքանչելի եւ հրաշալի բանաստեղծութիւնս մակաւասար բոլոր իմաստասիրական բանից։ Գտեալ եմ եւ զԿալլիմաքոսի եւ զԱնդրոնիկեայն[4] ի Հայ լեզու. բայց եւ զԵրկրաչափականն զԵւկլիդոսին։ Բ. Եւս բազում մատեանս, զորս ոչ եմք գտեալ ի մեր լեզուս՝ զերկուս մատեանս Պղատոնի[5], զՏիմէոսի Տրամաբանութիւնն[6] եւ զՓեդոնին, յորս բոլոր ճառն[7] նախագիտականին Աստուծոյն[8] պարփակեալ կայ, եւ զայլս բազումս յիմաստասիրացն իւրաքանչիւր — Մատեան[ք]ս այս[9] մեծագոյն է քան զՏաբեւոր Տօնականս — Դ. սկսայ թարգմանել.

---

[3] Տես Գիրք Սահմանաց Դաւթի Անյաղթի, էջ 164, տպ. Վենետ. 1833։

[4] Կալլիմաքոսի (Καλλίμαχος) եւ Անդրոնիկեայ (Ἀνδρόνικος) գործերը հայերէն թարգմանութեամբ դեռ չեն յայտնուած։ Անդրոնիկոս Պերիպատիկեան Հռոդացի՞ կ'ակնարկուի հոս, որ Արիստոտէլի գրուածքները ցանկած էր։

[5] Պղատոնի գործերէն թարգմանած է Գրիգոր Մագիստրոս հետեւեալ մասերը.

1. Եւթիփռոն կամ յաղագս Սրբոյ (Εὐθύφρων).
2. Սոկրատայ պատասխանի (Ἀπολογία).
3. Տիմէոս (Τίμαιος( —ԺՏ [illegible] բոկ մէջոսի.
4. Յաղագս Օրինաց (Νόμοι).
5. Ի Մինովս եւ յաղագս օրինի (Μίνως):

Առաջին 1—4 հրատարակուած են (ի ձեռն Հ. Ա. Սուքրեանի), Վենետիկ 1877, իսկ 4—5, անդ, 1890։

[6] Տպ. տրամաբանութեան։ Այսպէս Միւնխէնի օրինակը։

[7] Տպ. ճառսն։

[8] Տպ. այն։

[9] Մագիստրոս կ'ակնարկէ հաւանօրէն ձեռքի տակ ունեցած յունարէն իմաստասիրական գրուածներու հաւաքածոյ մը։

եւ եթէ տակաւին կամեսցի Տէր երկարանալ մեզ ի կենցաղումս՝ բազում հոգս յանձին կալեալ զմնացեալսն բոլոր Յունաց եւ Ասորւոց թարգմանել ոչ դանդաղեցայց»:

Հատուածս այսպէս դասաւորելով ինքնին դուրս կը կարկառի պարզ իմաստը. այն է. Մագիստրոս թարգմանութիւններու ձեռնարկելէ յառաջ նախ հետազօտած է, թէ նախնիք հին իմաստասէրներու ո՛ր գրուածքները թարգմանած են. եւ երեւան բերած է նախնեաց թարգմանութեամբ Ողիմպիոդորոսի, Կալլիմաքոսի, Անդրոնիկոսի եւ Եւկլիդէսի գործերը: Ապա կը յայտնէ թէ ներկայիս գրաւած է Պղատոնի երկու տրամաբանութիւնները՝ Տիմէոսի եւ Փեդոնի թարգմանութեամբ, որոնց պիտի յաջորդեն ուրիշներ, այսպէս, ինչպէս յիշեցինք՝ Եւթիփռոն, Պատասխանի Սոկրատայ, Օրէնք եւ Մինովս, գորոնք իրօք ալ թարգմանած է:

Ըստ այսմ Եւկլիդեայ Երկրաչափականը գտած էր նա նախնեաց թարգմանութեամբ. եւ արդէն, ինչպէս պիտի տեսնենք, աստ լեզուն աւելի ընտիր է եւ աւելի հին, քան Մագիստրոսի անհարթ լեզուն:

3. Գրիգոր Մագիստրոսի այս թղթէն մոլորուած[10], ի չարս անոր թարգմանութեանց յի-

[10] Առաջին անգամ ուշադրութիւն դարձուցած է Մագիստրոսի այս տեղւոյն Հ. Ս. Պրոնեան, Երկրաչափութիւն, էջ 20, ուր յիշելով թէ Եւկլիդեայ Երկրաչափութիւն «գրեթէ յամենայն լեզուս թարգմանեալ է ոչ միայն Եւրոպացւոց, այլ եւս եւ Արեւելեայց», կ'աւելցնէ. «որպէս եւ ի մեր հայկազեան լե-

չած է Եւկլիդեայ այս գրուածքը նաեւ Quadro delle opere di vari autori anticamente tradotte in Armeno, Venezia 1825 գործին անանուն հեղինակը, ինչպէս ինձ կը թուի՝ Հ. Մկրտիչ Աւգերեան, որ այսպէս կը գրէ (էջ 34), խօսելով ԺԱ. դարուն ի ձեռն Մագիստրոսի թարգմանութեանց վրայ. «Geometria, o Elementi della Geometria di Euclide... Di lui ci fa menzione il nostro traduttore (Grigorio Maghistros) nella lettera sumentovata, (a Sergio Dottore di Sevan), ed attesta d'aver intrapreso a trasportarla dal Greco in Armeno. Nulla di meno noi che al sommo segno afflitti deploriam la perdita dell' antecedente opera Platonica, consolarci dobbiamo almeno per la esistenza de' pochi frammenti, che ci è dato di leggere ne i libri Armeni di questa opera geometrica».

Ասկէ յայտնապէս կը տեսնուի, թէ հեղինակը ձեռքի տակ ունեցած է Եւկլիդեայ գործը: Այս մասին աւելի բացայայտ են Հ. Մ. Աւգերեանի տողերը Նոր Հայկազեան Բառգրքի Ներածութեան մէջ, Ա. (1837), էջ 12ա. «Եւկղիդեայ... Համառօտ գիրք յա-

---

ղու թարգմանեալ է յոգնական մշակն Հայաստանեայց պայծառութեան պերճապատիւ Գրիգոր Մագիստրոս Իշխանն. զոր օրինակ ինքն իսկ վկայէ ի թղթին՝ որ առ Սարգիս վարդապետ առաջնորդն Սեւանայ»: Նոյն կարծեաց կը հետեւէր նաեւ Հ. Ա. Բագրատունի, տե՛ս Ակինեան, Դասական հայերէնը եւ Վիեննական Մխիթարեան դպրոցը, էջ 180:

գալու Տարերաց Երկրաչափութեան։ Թարգմանութիւնն երեւի լինել Գրիգորի Մագիստրոսի՝ բառ խոստովանութեան նորա[11]։ Հարթ է ոճն, այլ ուրեք ուրեք եւ անհարթ տեսանի՝ առաւել յանհմտութենէ գրչաց»։ Այն բազմաթիւ կոչումները նոյն Բառգրքին մէջ, որոնք քաղուած են Եւկլիդեայ Երկրաչափութեան հայերէն թարգմանութենէն, ցոյց կու տան թէ ՆՀԲի հեղինակներու մատչելի եղած է ձեռագիր մը, եւ այն Վենետիկի Մխիթարեան Մատենադարանի ձեռագիրներէն։

Այսպէս թէ թարգմանուած էր Եւկլիդեայ Երկրաչափութիւնն հայերէնի եւ այս թարգմանութիւնը, թէպէտ «ի սակաւ պատառիկս», հասած է մեզի, ծանօթ էր արդէն 1825—1837 տարիներուն։ Հակառակ այս իրողութեան, Հ. Ա. Սուքրեան 1884ին երեւան հանելով նոյնին պակասաւոր օրինակ մը Պարիզի հայերէն մէկ ձեռագրի մէջ, իբրեւ «Նորագիւտ պատառիկ ի գրոց Տարերացն Երկրաչափութեան Եւկլիդեայ Աղեքսանդրացւոյ հին թարգմանութեամբ նախնեաց» լոյս կ'ընծայէր[12]։ Հրատարակչին անծանօթ մնացած են ոչ միայն Մագիստրոսի վկայութիւնն ու Quadroի ու ՆՀԲի յիշեալ տեղիքները, այլ եւ Մխիթարեան Մատենադարանի աւելի կա-

[11] Արտայայտութեան այս ձեւը ցոյց կու տայ որ ՆՀԲի հեղինակները վերապահութեամբ միայն Գր. Մագիստրոսի կը վերագրէին թարգմանութիւնը։

[12] Բազմավէպ, 1884. էջ 30—34։

տարեալ օրինակը։ Իրմէ աւելի բան չի գիտեր այս մասին Հ. Գ. Զարպհանալեան[13]։

Այսպիսի պարագայի մէջ զարմանալի պիտի չերեւայ, եթէ ուրիշ գիտնական մը, հայերէնագէտ M. Leroy, հետաքրքրուելով Եւկլիդեայ հայերէն թարգմանութեամբ, իր աչքերը դարձնէր դարձեալ Պաւիայի թերակատար օրինակին, երկրորդ հրատարակութիւն մ'ալ տալու համար. M. Leroy, La traduction arménienne d'Euclide[14]։ M. Leroy իր քննական հրատարակութեան կցած է հայ բնագրէն բառական թարգմանութիւն մը լատիներէն լեզուով եւ ներածական եւ բանասիրական նկատողութիւններ հայերէն թարգմանութեան մասին. գեղեցիկ աշխատութիւն մը, որ արժանի է ամէն հիացմունքի։

Հայերէն թարգմանութեան մնացորդին այս թերակատար հրատարակութիւնները հարկ կը դնեն իմ վրաս միւսանգամ լոյս ընծայել հայ բնագիրը իր ամբողջութեան մէջ։

4. Ձեռագիրք։ Եւկլիդեայ Երկրաչափութեան հայերէն թարգմանութիւնը մեզի հասած է երեք ձեռագիր օրինակներով։

ա. Pavia, R. Biblioteca Universitaria, Fondo Aldini, No. 178։ Պաւիայի Համալսարանի այս ձեռագրին մանր նկարագրու-

---

13 Մատենադարան հայկական թարգմանութեանց նախնեաց։ Վենետիկ 1889, էջ 432։

14 Annuaire de l'Institut de Philologie et d'Histoire Orientales et Slaves, t. IV (Bruxelles 1936), 785—816 (Mélanges Franz Cumont).

թիւնն ունիմ աչքիս առաջ, գրի առնուած † Հ. Գրիգորիս Գալէմքեարեանէ: Ձեռագիրս ժողովածոյ մըն է իմաստասիրական գրուածոց, որ կը բովանդակէ 1. Թղ. 1—12բ. Բառագիրք: 2. Թղ. 13ա—24բ. Արիստոտելի Յաղագս Աշխարհի (սկզբէն պակասաւոր) եւ Յաղագս Առաքինութեանց: 3. Թղ. 25ա—26բ. Այլուստ. Կնիքն է.երորդ զոր եբաց գառն: 4. Թղ. 27ա—108բ. Պորփիւրի Ներածութիւնն եւ Մեկնութիւնը: 5. Թղ. 110բ—116բ. Եւկլիդեայ Երկրաչափութիւնը (սկիզբէն պակասաւոր): Ձեռագրիս գրչութիւնը ԺԳ. դարու վերջին քառորդէն կ'երեւայ: Նմոյշ մը նմանատպութեամբ տուած է Leroy (անդ, էջ 786—788): Ձեռագրիս նկարագրութիւնը տուած է նաեւ F. C. Conybeare, Anecdota Oxoniensia, Oxford 1892, էջ XXX—XXXII = Փր. Կ. Կոնիբիր, Քննութիւնք գրոց Դաւթի Անյաղթի եւն. Թարգմ. Հ. Յ. Տաշեան, Վիեննա 1893, էջ 51—53. եւ Leroy, էջ 785—788:

բ. Tübingen, Universitätsbibliothek, cod. arm. 74: Տիւբինգէնի այս ձեռագիրն ալ ժողովածոյ է իմաստասիրական գրուածներու, հետեւեալ բովանդակութեամբ. 1. Թղ. 2ա—35բ. (Յովհաննու Դամասկացւոյ) Յաղագս գոյի էութեան, Բագրատ Մամիկոնեանի թարգմանութեամբ: 2. Թղ. 35բ—39ա. Գիրք Եւկլիդոյ Յաղագս տարերաց երկրաչափութեան: 3. Թղ. 39ա—բ. Յաղագս երկրաչա-

փութեանն (մղոնաչափք)։ 4. Թղ. 39բ—40ա. Աստեղաբաշխական երկրաչափութիւն։ 5. Թղ. 40ա—41բ. Յաղագս թուականութեան (եւ) կչռոց։ 6. Թղ. 41բ—44ա. Արիստոտելի Ժ. ստորոգութիւնքն։ 7. Թղ. 44ա—44բ. Եզնականն ասացեալ վասն արարչութեան աւուրց։ 8. Թղ. 44բ. Դիոնէսիոսի ասացեալ վասն հրեշտակաց։ 9. Թղ. 45ա—97բ. Ստորոգութեանցն Արիստոտելի Լուծմունք։ 10. Թղ. 97բ—143ա. Լուծմունք Պորփիւրի։ Շարունակութիւնն (Բ. Մասը, թղ. 149ա—218ա) այլ գրչէ է, 1457էն, զոր նկատի չենք առներ։ Ամբողջ Ա. Մասը մէկ գրչէ է, հաւանօրէն ԺԴ դարուն արտայայտուած օրինակէ մը, որ ժամանակաւ սեփականութիւնն եղած է Սմբատ Գունդստաբլի († 1276)։ Ձեռագրիս մասին տես Finck-Gjandschezian, Verzeichnis der armenischen Handschriften der Kgl. Universitätsbibliothek, Tübingen 1907, էջ 111—113։

գ. Վենետիկ, Մխիթարեան Մատենադարան։ Համաձայն համառօտ ցուցակի մը, զոր ունիմ տրամադրութեանս տակ, Եւկլիդեայ Երկրաչափութիւնը կը գտնուի նոյն Մատենադարանի Յովհ. Դամասկացւոյ գրութիւնները բովանդակող Բ. նօտրագիր օրինակին մէջ։ Ձեռագրիս մասին անդրագոյն տեղեկութիւններ կը պակսին ինձ։ Ձեռագիրն ըլլալով նօտրագիր, հաւանօրէն ԺԶ.—ԺԷ. դարէն է։ Այս օրինակը աչքի առաջ ունեցած

են Quadroյի եւ ՆՀԲի հեղինակները։ Որքան կարելի է դատել յառաջ բերուած կոչումներէն, ծագած է ձեռագիրս Տիւբինգէնի օրինակէն, միջնորդապէս կամ անմիջնորդապէս։

5. Ըստ բովանդակութեան նոյն բնագիրը կ'ընծայեն յիշեալ երեք ձեռագիրներն ալ։ Պաւիայի օրինակէն թուղթ մ'ինկած ըլլալով՝ կը պակսի հոն ընդարձակ հատուած մը, որ կը պարունակէր Երկրաչափութեան սկզբնաւորութիւնը։ Այս պակասը կը լրացնեն Տիւբինգէնի եւ Վենետիկի ձեռագիրները։ Ըստ այսմ Եւկլիդեայ Երկրաչափութիւնը երեք ձեռագիրներու մէջ ալ նոյն ծաւալով պահուած է, պարունակելով սկզբնագրին Ա. գրոց առաջին ութը, Heibergի հրատարակութեան 1—16 էջերը միայն։ Ա՞յսքան միայն թարգմանուած էր։ Չենք ուզեր հաւատալ, թէ հայ թարգմանիչը Եւկլիդեայ լայնածաւալ գործէն ճաշակ մը միայն տալ փափագած ըլլայ։ Եւ եթէ Գրիգոր Մագիստրոս կ'աւետէ Սարգիս վարդապետին, թէ երեւան բերած է «զԵւկլիդոսի Երկրաչափականն» հայերէն թարգմանութեամբ, անշուշտ չէր իմանար անով այս զոյգն բեկորը, որուն գիւտը թէեւ այսօր մեզի համար բանասիրօրէն հետաքրքրական, բայց իմաստասէր Մագիստրոսի համար չէր կրնար շահագրգիռ նկատուիլ։ Այս մտածմունքը կը մղէ զիս ենթադրելու, թէ նախնիք ունէին հայերէն թարգմանութեամբ Եւկլիդեայ գէթ Երկրաչափութեան

Ա.—Ջ. գրքերը: Յամենայն դէպս այդ ըն-
դարձակ աշխատութեան փոքր մէկ բեկորը
միայն մատչելի է այսօր մեզի. եւ հարկա-
դրուած ենք անոր վրայ կենդրոնացնել մեր
ուշադրութիւնը:

Եւկլիդեայ Երկրաչափութիւնը իբրեւ տե-
սակ մը գիտնական մատենագրութեան,
կ'արթնցնէ առանձին հետաքրքրութիւն, այնու
մանաւանդ, որ աղքատ է հայ մատենագրու-
թիւնը այս տեսակին մէջ:

6. Որովհետեւ թէ Սուքրեան եւ թէ Leroy
իրենց հրատարակութիւնները Պաւիայի թերի
օրինակի վրայէն կատարած են, եւ այսպէս
արդէն բեկորով մեզի հասած բնագրի մը բե-
կորիկը հրապարակի վրայ դրած, անհրա-
ժեշտ կը համարիմ բեկորս իր ամբողջու-
թեամբ լոյս ընծայել, հիմ առած Տիւբին-
գէնի ձեռագիրը (T). իսկ Պաւիայի (P) օրի-
նակին ընթերցուածները կը ներկայացնեմ
Բագմավէպի (B) եւ Leroyի (L) հրատարա-
կութեանց վրայ յեցած: Վենետիկի (V) ձե-
ռագիրը չունիմ տրամադրութեանս տակ.
կ'օգտուիմ այն կոչումներէն, զորոնք յառաջ
բերած է ՆՀԲ:

Բնագրին մէջ ներկայացուած երկրաչա-
փական ձեւերը առնուած են Heibergի հրա-
տարակութենէն. թէ Պաւիայի եւ թէ Տիւբին-
գէնի օրինակներու մէջ կրած են անոնք ձեւա-
փոխութիւններ առաւել կամ նուազ չափով:
Պաւիայի ձեռագրին նմանատպութիւնը տուած
է Leroy:

7. Հայերէն թարգմանութիւնս կատարուած է յունարէն սկզբնագրէ։ Աչքի առաջ ունիմ Heibergի վերակազմած յունարէն բնագիրը։ Համեմատելով հայ թարգմանութիւնս սկզբնագրին հետ կը տեսնուի, թէ թարգմանիչը ձեռքի տակ ունեցած է օրինակ մը, որ կը պատկանէր խումբի մը, որ բազմօք կը շեղի Heibergի նախընտրած բնագրէն։ Այդ խումբը կ՚ընծայէ ընթերցուածներ, որոնք ծանօթ են Heibergի գործածած ձեռագիրներու. բայց կան նաեւ ծանրակշիռ շեղումներ, որոնք սեպհական են իրեն։ Հաւանօրէն թարգմանիչը օգտուած է ձեռագիրներու խումբէ մը, որ Է. դարուն գործածական էր բիւզանդական դպրոցներու մէջ։ Այս տեսակէտէ հետաքրքրական է հայերէն բնագիրս, խմբաւորելու համար Եւկլիդեայ գործին յունարէն ձեռագիրները։ Բանասիրական աշխատութիւն մը, զոր կը թողունք մասնագէտ բանասէրներու։

8. Հայ թարգմանիչը 572—600 շրջանին ծաղկած հելլենասէր դպրոցներու չէր պատկաներ։ Այդ թուականէն յառաջ չէր կրնար ըլլալ։ Նաեւ ոչ ուշ քան Ը. դար։ Թարգմանիչը տեղեակ է նիւթին. հմուտ է նաեւ հայերէն լեզուի. չի միտիր հելլենասէր դպրոցի, չ՚ախորժիր արուեստական ոճէ. կը սիրէ արտայայտուիլ պարզ, իմանալի ըլլալու համար։ Կարդացած է հելլենաբան դպրոցի գրականութիւնը. իւրացուցած է անկէ բառեր,

սութիւններ։ Կը թարգմանէ ազատօրէն, առանց խստիւ կապուելու յունարէն բնագրին, առանց ստրկօրէն հետեւելու յունարէն շարադասութեան եւ բառակազմութեան։

Նկատի առնելով թարգմանչի այս յատկութիւնները, կը թուի ինձ, թէ կրնանք զանիկա նաեւ յանուանէ կոչել։

9. Աչքի առաջ ունինք Անանիա Շիրակացին եւ անոր ուսուցիչը Տիւքիկոս։ Թէ ուսուցիչն եւ թէ աշակերտը հմուտ համարողութեան։ Կը պատմէ Անանիա թէ ինքը «յոյժ կարօտեալ արուեստիս համարողական» կը փափաքի ուսանիլ զայն. բայց «ի Հայս ոչ գտի մարդ, որ գիտակ էր իմաստասիրութեան (այն է համարողութեան) եւ ոչ գիրք արուեստից գտի յաշխարհիս։ Ապա դիմեցի յաշխարհն Յունաց եւ հասի ի Թէոդուպօլիս»։ Հոն կը լսէ թէ «գոյ այր մի համարող յաշխարհին Չորրորդ Հայոց (ի) Տիգրանակե՞րտ), Քրիստոսատուր անուն նորա. եւ չոգայ (եւ) արարի առ նմա աւուրս վեցամսեայ (ժամանակի). եւ տեսի զի ոչ ունէր զբովանդակ արուեստն, այլ աստի եւ անտի ծայրաքաղ»։ Յետ երկար թափառումներու կը գտնէ ի վերջոյ ի Տրապիզոն համարողութեան արուեստի հմուտ ուսուցիչ մը յանձին Տիւքիկոս Բիւզանդացւոյ, որ բացի մեծ գիտնական ըլլալէ, էր նաեւ քաջ հայերէնագէտ։ «Կայր առ նմա, կը գրէ Անանիա, անչափ գրեանք, գաղտնիք եւ յայտնիք եւ ար-

տաքինք, արուեստականք եւ պատմագիրք, բժշկականք եւ ժամանակագիրք»: Եւ Տիւքիկոս «Թարգմանութեան այնպիսի ունէր շնորհս ի Հոգւոյն սրբոյ, <զի> իբրեւ կամէր Թարգմանել զյունարէն գրեալն ի հայ <լեզու>, ոչ զեզերումն առնէր, որպէս զայլ Թարգմանիչսն. հայերէն ընթեռնոյր լեզու իբրեւ զհայերէն գրեալն»: Տիւքիկոս «սիրեաց զիս որպէս որդի», կը գրէ Անանիա, «եւ ուսայ լիով զարուեստ համարողութեան». «եւ կեցի առ նմա ամս ութն եւ ուսեալ հմուտ եղէ գրոց բազմաց, որք չէին Թարգմանեալ ի մեր լեզու». եւ կ՚աւելցնէ. «եւ ես տրուպս ի Հայաստանեաց ուսայ ի նմանէ զհզօր արուեստս (համարողութեան) եւ բերի յաշխարհն մեր»[15]:

Անանիա բերաւ ի Հայս համարողութեան արուեստը անշուշտ ոչ միայն համբարելով զայն իր մտքի շտեմարանին մէջ, այլ եւ մատենագրութեամբ, այս ինքն հայացնելով յունարէն համանիւթ գրականութիւնը, կա՛մ իր իսկ սեպհական քրտինքով եւ կա՛մ ի ձայնէ Տիւքիկոսի գրի առնելով: Վաստակը ութը ձիգ տարիներու:

Եթէ Անանիա առ ոտս Տիւքիկոսի ուսած է համարողութեան արուեստը, առանց տարակուսի իբրեւ դասագիրք ունէր ձեռքի տակ Եւկլիդեայ Տարերքը, եւ այն Տիւքիկոսի

---

15 Անանիայի Շիրակունւոյ Մնացորդք բանից. ի լոյս ած Ք. Պ(ատկանեան), Ս. Պետերբուրգ 1877. էջ 1—3:

*հայերէն թարգմանութեամբ։ Զենք կրնար հաւատալ, թէ Անանիա կարճ ժամանակի մէջ ուսած ըլլար յունարէնը, այնքան, որ կարենար իր ուսմունքը Եւկլիդեայ յունարէն սկզբնագրի վրայ ընել։*

10. *Տիւքիկոս հմուտ էր համարողութեան արուեստին, միաժամանակ ծանօթ հայերէն լեզուին։ Անիկա թարգմանած ըլլալու է Եւկլիդեայ Տարերքը իր աշակերտին համար կամ անձամբ եւ կամ հայերէն թելադրութեամբ եւ Անանիայի գրչութեամբ։ Բնականաբար այս դէպքին պիտի պահանջէր պէտքը, որ թարգմանիչը աւելի իմաստի պարզութեան քան բնագրին հաւատարմութեան ուշադիր ըլլար։*

*Թարգմանիչը թէպէտ կը գտնուի հելլենաբան դպրոցի ազդեցութեան տակ, բայց ենթարկուած չէ ոչ քերականութեան եւ ոչ ալ բառակերտութեան մէջ անոր նորաձեւութեանց։ Ծանօթ են իրեն հելլենաբան դպրոցի բառարանէն ինչ ինչ բառեր, այսպէս* ներգործեմ (*տ.* 128), պարունակեմ (*տ.* 32, 43, 49), պարագրեմ (*տ.* 125), պարագրութիւն (*տ.* 30), *բայց գիտէ զանոնք իբրեւ հայերէն գիտական լեզուի մէջ ընդունուած բառեր եւ կը կիրարկէ զանոնք ազատօրէն, առանց ձգտելու յունարէն բնագրին բառակերտութեան նմանող ըլլալու։ Յունարէն* περιέχω *հայացուցած է* պատեմ, պարագրեմ *եւ* պարունակեմ. *իսկ* պարագրութեամբ *անիկա ու-*

գած է բացատրել բնագրին ὅ τινός ἐστι πέρας. Այսպէս նաեւ περιφέρω, ազատօրէն արտայայտած է պարունող եւ պարունակող բառերով, փոխանակ հետեւելու հելլենաբան դպրոցի պարբերեմ եւ նման բառակերտութեանց:

Եւ եթէ պատահի յունարէն սկզբնագրին մէջ մասնագիտական բառերու կամ ասութեանց, կը նախընտրէ միտքը արտայայտել քան բռնազբօս բառակերտութեանց դիմել. ուրիշ տեղեր կը դիմէ փոխառութեան, լաւ համարելով յունարէն բառը քան անոր բռնի հայացումը. այսպէս յն. διάμετρος, որուն միտքը կ՚արտայայտէ երկակտուր հայերէնով, իբրեւ մասնագիտական բառ փոխ կ՚առնէ տառադարձութեամբ դիամետրովն, պիտի սպասուէր դիամետրոս. հոս հելլենաբան դպրոցի աշակերտ մը մեզի պիտի հրամցնէր տրամաչափ: Այսպէս նաեւ յն. κέντρον, որուն միտքն է միջոց (տ. 38), կը տառադարձուի կենտրովն (կենդրովն, փոխ. կենդրոն):

Այս կէտը ուշագրաւ է զանազանելու համար Թարգմանիչն եւ Անանիա Շիրակացին: Վերջինս կը սիրէ գործածել ինչպէս շատ մը ուրիշ հելլենաբան դպրոցի բառեր, նոյնպէս տրամագիծ (δι γραμμα, էջ 36, 38), տրամանկիւն (διαγώνιος), տրամաչափական (διαμετρικός) եւ այլն:

*Բառեր բարդելէ խուսափած է Թարգմանիչը նաեւ հոն, ուր կրնար յունարէն բարդ մը դիւրաւ հայացնել, առանց միտքը թիւրելու. այսպէս.*

*εὐθύγραμμος, ուղիղ գիծ*, 20 (*փոխ. ուղղագիծ*):

*ἡμικύκλιος, կէս բոլորի* (45, 50 *կիսաբոլոր*):

*τρίπλευρος, որ երիս ունի կողս*, 57, *որ երիս ունի կողս*, 64 (*եռակող*):

*τετράπλευρος, որ չորս ունին կողս*, 70 (*քառակող*):

*ὀρθογώνιος, որ ուղղորդ ունի զանկիւնս*, 73, *այլուր սակայն՝ ուղղանկիւն*, 65:

*ὀξυγώνιος, սուր անկիւն*, 68 (*սրանկիւն*):

*τρίγωνος, երեք անկիւն*, 65, *բայց նաեւ* եռանկիւն, 148, եռանկիւնի, 135:

*ῥομβοειδής, նման թիւրի* (77):

*ἀμβλυγώνιος, բութ անկիւն*, 167 (*բթանկիւն*) *են*:

*Կան սակայն բարդ ձեւեր ալ.*

*ἑτερομήκης, երկայնաւոր*, 73:

*ἰσοσκελής, հաւասարասրուն*, 59:

*ἰσόπλευρος, հաւասարակող*, 128, 135, 148:

*τετράγωνος, քառակոյս*, 71, *քառակուսի*, 83:

Ունինք նոր բարդութիւն մ'ալ՝ վե-րեւուրթիւն, χωρίον, 126, հոս «մակերեւոյթ» իմաստով:

Թարգմանութեանս ոճի եւ լեզուի մասին ՆՀԲի դատաստանը ընդհանուր առմամբ ու-ղիղ է. «հարթ է ոճն»: Հակառակ սեղմ ոճի, որով գրուած է սկզբնագիրը, թարգմանիչը յաջողած է տալ իր թարգմանութիւնը պարզ ձեւով եւ հաճելի հայերէնով: Եւ երբ Անա-նիա Շիրակացի գրուատելով իր ուսուցիչը, կը գրէ թէ թէպէտ հայ չէր անիկա, բայց էր «լի իմաստութեամբ եւ գիտակ հայերէն դպրութեան», կը համարինք թէ բոլորովին անհաւանական պիտի չըլլայ մեր ենթա-դրութիւնը, որով Տիւքիկոսի կը վերագրենք Եւկլիդեայ Տարերաց թարգմանութիւնը: Եւ նա թարգմանելով գործս՝ կրնար ուրախ սրտով կրկնել խօսքերս, ինչ որ ըսած էր երբեմն Անանիա Շիրակացին. «Գոհանամ զԱստուծոյ, որ առաքեաց զքեզ ի խնդիր իմաստից, առնել (առնե՞լ) զարուեստս զայս (զհամարողութեան) ի վիճակ սրբոյն Գրի-գորի. եւ առաւել ուրախ եմ, զի լինէն աշա-կերտի աշխարհն այն. զի ես ի մանկութեան իմում շատ կացի ի Հայս. եւ ազնուութիւն էր ի նմա» (էջ 2):

Տա՛ր բախտը եւ գտնուէր Եւկլիդեայ Երկրաչափութեան հայերէն թարգմանու-թիւնը իր ամբողջութեան մէջ:

---

# ԵՒԿԼԻԴԵԱՅ
## ԳԻՐՔ ՅԱՂԱԳՍ ՏԱՐԵՐԱՑ ԵՐԿՐԱՉԱՓՈՒԹԵԱՆ

### < ԳԻՐՔ Ա. ՍԱՀՄԱՆՔ >

[36ա] ա. *Կէտ իր է, որ ոչ ունի մասն:*

բ. *Եւ գիծ՝ երկայնութիւն առանց լայնութեան:*

գ. *Եւ բովանդակութիւն իւր յերկուս կէտս:*

դ[1]. *Եւ ուղիղ գիծ է, որ եդեալ է ի վերայ դիմաց կէտիցն, որ կան ի վերայ նորա ընդդէմ միմեանց:*

դ[2]. *Եւ կամ դարձեալ ուղիղ գիծ է կարճ գիծն, որ անկանի ի մէջ երկուց կէտից:*

ե. *Եւ պարզ է, որ ունի երկայնութիւն եւ լայնութիւն միայն:*

է. *Եւ ուղիղ պարզ է, որ եդեալ ի վերայ դիմաց ուղիղ գծին, որ կան ի վերայ նորա ընդդէմ միմեանց:*

ը. *Պարզ անկիւն է չեղութիւն երկուց գծից, որ եդեալ են յուղիղ պարզի եւ հպեալ ի միմեանս անուղղաբար:*

թ. *Եւ յորժամ լինի երկայն գիծն ուղղորդ՝ կոչի ուղիղ գիծ:*

---

ԽՈՐԱԳԻՐ՝ *Գիրք Եւկլիտաս յ. ա. ե.* TV *«Եւկլիդեսի երկրաչափական». Գր. Մողխառոս: — Գիրք Ա. Սահմանք* չունի T: Սահմաններու ա—ից բաժանմանց թուերը չունին TP, ինչպէս նաեւ յունարէն ձեռագրներէն ոմանք:

1 Տես տողս ՆՀԲ ը. բ. *կէտ*: — 2—8 տողերս ՆՀԲ ը. բ. *գիծ* եւ *ուղիղ*: — 14 *ուղեղ* T: — 16—18 տողերս ՆՀԲ ը. բ. *անուղղաբար*: — 18 *անուղա-*բար T: — 19 ուղորդ T:

ժ. Եւ մինչ յուղղորդ գծի վերայ կանգնի ուղիղ գիծ, եւ առնէ հաւասար զերկու անկիւնսն որ ի կողմունսն, երկաքանչիւրքն կոչին ուղիղ անկիւնս. եւ գիծն այն կոչի սիւն այնմ գծի, յորոյ վերայ կանգնեալ է:

ժա. Եւ թէ մեծ լինի քան զուղիղն՝ կոչի բութ:

ժբ. Եւ թէ փոքր քան զուղիղն՝ կոչի սուր:

ժգ. Եւ սահման է պարագրութիւն իրերաց:

ժդ. Եւ ձեւ է, որ պարունակի ի միոյ սահմանէ կամ ի բազմաց:

ժե. Բոլոր է ձեւ պարզ ուղիղ եւ պատէ զնա մի գիծ եւ կայ ինքեան մի կէտ. եւ գիծք ուղիղք, որ ելանեն ի նմանէ՝ բաւանդակին ի բոլորին գիծ եւ են հաւ[36բ]ասար միմեանց:

ժզ. Եւ այն կէտ է կենտրոն բոլորին, որ է միջոց:

ժէ. Եւ երկակտուր բոլորին, որ կոչի դիամետրոն, է ուղիղ գիծ, որ անցանէ ընդ կենդրոն բոլորին եւ բաւանդակի յերկուց կողմանց ի պարունակեալն գիծ եւ բաժանէ զնա յերկուս:

ժը. Եւ կէս բոլորի ձեւ այն է, որ պատէ

21—24 տողերս ՆՀԲ ը. բ. ուղիղ: — 21 յուղորդ T վերականկնի T: — 26—29 տողերս ՆՀԲ ը. բ. բութ: — 28 զուղիւղն T: — 34—35 տողերս ՆՀԲ ը. բ. կենդրոն: — 36 ուղեղք T: 38 կէտէրոն T: — 38—39 տողերս ՆՀԲ ը. բ. կենդրոն: — 40—42 տողերս ՆՀԲ ը. բ. երկակտուր եւ կենդրոն: — 41 ուղեղ T:

զինքն զդիամետրոմն · եւ աղեղնն այն, զոր հատանէ զդիամետրոմն ի պարունող գծէն · եւ հատուած բոլորի է ձեւ, որ պատէ զինքն ուղիղ գիծ եւ մասն մի ի պարունակող գծէն՝ կամ մեծ եւ կամ փոքր քան զկէս բոլորի :

ժթ · Եւ ձեւք ուղիղ գծից են, որ պատեն զինքեանս ուղիղ գիծք · եւ ի նոցանէ որ երիս ունին կողս՝ պատին յերից ուղիղ գծից · եւ որք չորս՝ ի չորից պատին ուղիղ գծից · եւ որ առաւել քան զայսոսիկ՝ նոյնպէս պատին ըստ որքանութեան ուղիղ գծիցն :

ի · Եւ որ զերիսն ունին կողս, է ի նոցանէ որ երեք կողքն հաւասարք են, այն որ հաւասար ունին զկողմունքն միմեանց · եւ որ հաւասարասրունք կոչին այն են, որ ի կողից իւրեանց երկու միայն ունին կողս հաւասարս · եւ յանհաւասար կողիցն են որ երեքն անհաւասարք են միմեանց :

իա · Եւ ի սոյն ձեւք, <որ> երիս ունին կողս · կայ ի նոցանէ երեքանկիւն ուղղանկիւն, այն որ ուղիղ ունի զանկիւնսն, եւ երեք [37ա] անկիւն բութանկիւն, այն որ բութ ունի զանկիւնսն, եւ երեքանկիւն սուրանկիւն, այն որ սուր ունի յերեքանկիւնսն :

47 պարունող T : — 49 չիք ի T : — 51 ուղիղ] ասկէ կը սկսի P գիծ իցեն B : — 52 ուղեղ T : — 54 որք BL պարտին T : — 56 որքանութենէ P ուղեղ T : — 57—58 տողերս ՆՀԲ ը. ք. կողս : — 59—61 տողերս ՆՀԲ ը. ք. հաւասարասրուն : — 61 հօասարասրուն T : — 65 կա T Գ. անկիւն P եռանկիւն B : — 65—69 տողերս ՆՀԲ ը. ք. ուղղանկիւն, բութանկիւն, սրանկիւն : — 69 զ. Գ. անկիւնսն P զերիս անկիւնսն BL :

իբ. *Եւ ձեւք, որ չորս ունին կողս, կայ ի նոցանէ քառակոյս, որ հաւասար ունի զկողսն եւ ուղիղ զանկիւնսն. եւ է որ կոչի երկայնաւոր, այն որ ուղղորդ ունի զանկիւնսն եւ անհաւասար զկողս. եւ կայ դարձեալ որ կոչի Թիւր, այն որ ունի կողս հաւասարս եւ անկիւնս անուղիղս. եւ ի նոցանէ գոյ նման Թիւրի, այն որ զերկու կողս ի կողմից խորոյ՝ որ ընդդէմ միմեանց են՝ հաւասար ունի, եւ երկու անկիւնքն ընդդէմ իրերաց հաւասարք են. եւ է ի նոցանէ, որ չեղեալ կոչի, այն որ ոչ զկողս ունի հաւասար եւ ոչ զանկիւնս ուղիղ. եւ որ այլ եւս զատանին արտաքոյ ասացելոցս քառակուսի ձեւք՝ կոչին նման չեղոյն:*

իգ. *Եւ գիծք ուղիղք եղեալք առ միմեանս են որ լինին ի միում պարզի ուղղակիք, եւ եթէ ելանեն յանբաւս յերկուց կողմանց՝ չմերձենան ի միմեանս ոչ ի յայս կոյս եւ ոչ յայն:*

ԵՒ ԻՆՉ ՈՐ ԿԱՐԱՒՏԵՄՔ ՀԱՒԱՆԱԿԱՆ ԼԻՆԵԼ ՎԱՍՆ ՆՈՑԱ. ԵՆ ՀԻՆԳ

ա. *Գիծք ուղիղք, զոր հանեմք կէտէ ի* [37ր] *կէտ:*

70—85 տողերս ՆՀԲ

բ. ը. *քառակոյս, երկայնաւոր, Թիւր, չեղիմ, չեղ*: — 70 *կա* T: — 72 *ուղեղ* T *զանդունսն* T: — 73 *ուղորդ* PT *զանկիւնս* P: — 74 *կա* T *Թիւր* P: — 76 *անուղեղս* T: 79 *անդիւնքն* P: — 81 *զկողսն* PV: — 82 *ուղեղ* T: — 85 *ուղեղք* T: — 88 *չմերձին* P *ի* չիf P: — 90 *կարաւտ եմք* BL: — 92 *ուղեղք* T:

բ· *Ուղիղ գիծ բաւանդակեալ այլ եւս կցել ի նոյն ուղղութիւն։*

գ· *Որ յամենայն կէտ եւ յամենայն չափ հանեմք բոլոր։*

դ· *Զի ամենայն ուղիղ անկիւնք հաւասարութիւն ունին առ իրեարս։*

ե· *Զի թէ անկանի ուղիղ գիծ ի վերայ երկու ուղիղ գծի եւ առնէ երկու անկիւն ի մի կողմն, որ լինին պակաս քան զերկու ուղղորդ, յորժամ ելանեն յայն պակաս կողմն՝ գիպին միմեանց։*

ԳԻՏՈՒԹԻՒՆ ՀԱՆՈՒՐՑ ՀԱՒԱՆԱԿԱՆ

ա· *Իրք, որ հաւասար են միում իրի, ինքեանք հաւասար են միմեանց։*

բ· *Եւ թէ յաւելու ի հաւասարսն այլ եւս հաւասարս, լինին ամենայնքն հաւասարք։*

գ· *Եւ թէ պակասէ ի հաւասարէն հաւասար, որ մնայ՝ հաւասարք են։*

դ¹· *Եւ թէ յաւելու ի վերայ անհաւասարին հաւասար, լինին ամենայնքն անհաւասար։*

դ²· *Եւ թէ պակասէ յանհաւասարէն հաւասար, որ մնայն՝ անհաւասար է։*

*յուղիղ* P: — 94—95 անընթեռնլի P լրացուած՝ *բաւանդա]կեալ հանեմք յանրա[ւս*, կարդա՛ն: — 98 *ուղեղ* T *հավասարութիւն* T: — 100 *եթէ* P *անդանի* P *ուղեղ* T: — 101 *ուղեղ* T *անկիւն* P: — 102 *կողմ* T: — 105 տողս՝ ՆՀԲ բ· բ· *հաւանական*: — 106—125 *ա—թ* բաժանմունք չունին PT: — 107 *հօասար* T: — 110 *եթէ* P: — 111 *մնա* PT: — 112—116 տողերս ՆՀԲ բ· բ· *հաւասար, անհաւասար*: — 116 *մնայնն* T *մնայն* B:

ե· Եւ այնք, որ իւրաքանչիւր ոք կրկին է միոյն, հաւասարք են:

զ· Եւ այնք, որ իւրաքանչիւրքն կէս են միումն՝ հաւասարք են:

է· Եւ այն, որ չյաւելու մի քան զմի, յորժամ դնի ի միմեանց վերայ, հաւասարք են:

ը· Եւ բոլորն մեծ է քան զմասն:

թ· Եւ երկու ուղիղ գիծք ոչ պարագրեն զվերերեւութիւն:

## [38ա] ՑԱՌԱՋԱԲԱՆ ԱՌԱՋՆՈՒՄ ՃԱՌԻՆ

Կամիմք ներգործել երիս անկիւնս հաւասարակողս ի վերայ տուելոց գծիցն:

Եւ լիցի տուեալ գիծն ԱԲ:




Եւ առնեմք զԱ կենտրոնն, եւ գծեմք ի վերայ նորա բոլոր ի չափ ԱԲին, որ է ԲԳԴ.

119 այնքն T: — 124 զմասնն P: — 124—126 տողերս ՆՀԲ ը· թ· բոլոր, վերերեւութիւն: — 125 Բ ուղեղ T գիծ PTV: — — Ն1 ջիուղառաճառի T: — 128 անկ(իւն) T անգիւնս P: — 131—132 տողերս ՆՀԲ ը· թ· կենդրոմն: — 132 այբին՝ |:

*եւ առնեմք զԲ կենտրոն եւ գծեմք բոլոր ի չափ ԲԱին, որ է ԱԳԵ, եւ հանեմք ԱԳ եւ ԲԳ եւ ասեմք զի արարաք եռանկիւնի հաւասարակող ի տուեալ գծէն:*

*Եւ է ցուցումն նորա այս. ԱԳն հաւասար է ԱԲին, վասն զի երկու կէս դիամետրոն ԲԳԴ բոլորին են եւ ԲԳն հաւասար են ընդ ԱԲին, քանզի երկու կէս դիամետրոն ԱԳԵ բոլորին են. ապա ԱԳն եւ ԲԳն հաւասար են:*

*Եւ այս է զոր կամէաք ցուցանել:*

### < ՅԱՌԱՋԱԲԱՆ ԵՐԿՐՈՐԴՈՒՄ ՃԱՌԻՆ >

*Կամիմք հպեցուցանել ի տուեալ կէտ գիծ որպէս տուեալ գիծ:*

*Եւ լիցի կէտն այն Ա, եւ գիծն ԲԳ:*

*Եւ հպաւորեմք ԱԲ եւ առնեմք ի վերայ նորա եռանկիւն հաւասարակող, որ է* [38բ] *ԴԱԲ. եւ հանեմք ԴԱ, ԴԲ մինչեւ ի Ե եւ ի Զ. եւ գծեմք ի վերայ երկու կենտրոնին Բ, Դ եւ ի յերկու հեռաւորութիւնն ԵԴ, ԲԶ բոլորս երկուս ԳԶԷ, ԶԸԵ:*

*Եւ է ցուցումն. ԴԵն է որպէս ԴԶն, եւ ԴԱն որպէս ԴԲն. եւ թէ պակասէ ի հաւասարէն հաւասար, որ մնայ՝ հաւասար է.*

35 – 36 տողերս Ն՜Բ ը. բ. *հաւասարակող*: — 136 *հաւասարի կողի* T: — 139 *է* P: — 140 *այրին* T: — 141 *ԱԳ* T: — — 144 *կամ(իմք)* T:146 *կէտ* P: 147 *եւ առնեմք ի* անընթեռնլի P, լրացուած՝ *եւ գծեմք ի* BL:
153 *ցուցումն* P: — 154 *եթէ* P: — 155 *մնա* T:

ապա ԱԵՆ որպէս ԲԳՆ է, որ հաւասար է ընդ ԲԳՆ:

Այս է զոր կամէաք առնել:

< ՅԱՌԱՋԱԲԱՆ ԵՐՐՈՐԴՈՒՄ ՃԱՌԻՆ >

Կամիմք հատանել ի յերկու տուեալ գծէն, ի յերկայնէն որպէս ի կարճէն:

Եւ լիցի երկայն գիծն ԲԺ, եւ կարճն Ի:

Եւ կցեմք ի կէտ երկու գիծ ԲԳ. որպէս գիծ Ի. եւ գծեմք ի վերայ կենտրոնին Բ եւ ի հեռաւորութիւնն ԲԳ բոլորին ԳԶԷ. եւ լինի ԲԶ որ հատուածէ որպէս ԲԳ. վասն զի են երկու կէս դիամետրոնք ի բոլորին:

156 ԲԶՆ L: — 165 բոլոր P:

# ԴԱՐՁԵԱԼ ԵՒԿԼԻԴԵԱՅ ՏԱՐԵՐՔ ԵՐԿՐԱՉԱՓՈՒԹԵԱՆ

1.

*Քսան տարի առաջ* M. Leroy *հրատարակած էր Եւկլիդէսի Երկրաչափութեան հայերէն թարգմանութիւնը Պաւիայի Թ. 178 ձեռագրէն: Որովհետեւ այդ միակ կարծուած ձեռագիրը սկիզբէն պակասաւոր էր իբր* 50 *տող, կարեւոր համարած էի ընագիրը միւսանգամ հրատարակել Տիւբինգէնի Համալսարանի Թ.* 74 *հայերէն ձեռագրէն, որ ունէր Պաւիայի օրինակէն դուրս ինկած մասն ալ (Հանդ. Ամս.* 1937, *էջ* 225—242. *հանդերձ ուսումնասիրութեամբ):*

M. Leroy *փութացած էր լատիներէնի թարգմանել իմ հրատարակութենէն Պաւիայի ձեռագրին պակասաւոր մասը (տողք* 1—50). Un nouveau fragment d'Euklide, *ի թերթին* Revue des études indo-européennes 1 (1938), 39—44: *Այս առթիւ անդրադարձած է Մ. Լըրուա նաեւ իմ ուսումնասիրութեանս վրայ, ուր ըսած էի, թէ Երկրաչափութեան թարգմանիչը Գրիգոր Մագիստրոս չէ, ինչպէս համարած էր Լըրուա իր հրատարակութեան*

Ներածութեան մէջ, մոլորելով Մագիստրոսի «սկսայ թարգմանել» տեղիքէն: Ե՛ւ այժմ կը գրէ, թէ «մենք կը շարունակենք մնալ մեր յառաջուան կարծիքին վրայ» (էջ 44):

Ան չ՚ընդունիր նաեւ թէ Վենետիկի Մխիթարեանց Ձեռագրատան մէջ գոյութիւն ունենայ Եւկլիդեայ օրինակ մը, այն պատճառաբանութեամբ, որ Հ. Գ. Զարբանալեան զայն չէ յիշատակած:

Եթէ կարելի է ներել թարգմանչի մասին իր արտայայտութիւնը, որուն պիտի անդրադառնամ քիչ յետոյ, բայց կը համարիմ թէ անհիմն է իր մերժումը երկրորդ կէտի մասին, քանի որ ցոյց տուած էի ձեռագիրը (Բ. Օրինակ Յովհ. Դամասկացւոյ գրութեանց) եւ Նոր Հայկազնեան Բառագիրքը, ուր յառաջ բերուած էին, ա՛յս ձեռագրէն, այլ եւ այլ կոչումներ, թուով 16, ընդ ամէնը իբր 63 տող, որոնցմէ 7 վկայութիւնք (25 տող) առաջին մասէն:

Այժմ կարող եմ աւելել, թէ գտնուած է Երկրաչափութեանս չորրորդ օրինակ մ՚ալ. ուստի

1. Պաւիայի Թ. 178 Fondo Aldini,

2. Տիւբինգէնի Թ. 74:

3. Վենետիկի, Յովհ. Դամասկ. Բ.:

4. Երեւան, Մատենադարան Թ. 4166, Թղ. 208ա—209ա, ԺԳ. դարէ (Գիտական Նիւթերի Ժողովածու, Ա. [Երեւան 1941], էջ 54):

2.

Եւկլիդեայ Տարերաց հայերէն թարգմանութեան մասին չորրորդ գրութիւն մ'ալ լոյս ընծայեց Արիզոնայի Համալսարանի ուսողագիտութեան ուսուցչապետը Արմենակ Ա. Շաղոյեան (Allen A. Shaw, A Pre-Euclidean Fragment of the Elements), զոր նախ կարդացած էր Պասադենայի Ամերիկեան ուսողական Ընկերութեան համագումարին մէջ, 1938, Նոյեմբեր (հմմտ. Bulletin of American Mathematical Society, vol. 43, էջ 774 եւ ապա հրատարակած National Mathematics Magazine, vol. XIII, No 2, November 1938, որմէ ունիմ տրամադրութեանս տակ արտատպութիւն մը, էջ 1—7։

Շաղոյեան ունեցած է աչքի առաջ Պաւլիայի օրինակը եւ Բազմավէպի 1884 տարւոյ հրատարակութիւնը. ուստի պակասաւոր օրինակ մը, զոր թարգմանած է անգլիերէնի. իսկ իբրեւ հայերէն բնագիր ներկայացուցած է Բազմավէպի 1884 տարւոյ 31—34 էջերը լուսատիպ։ Գրիգոր Մագիստրոսի տեղիքը ծանօթ է իրեն Հ. Գ. Զարբանալեանի Հայկական հին դպրութեան Պատմութենէն (1932, էջ 586), ուր Եւկլիդեայ Տարերքի թարգմանութիւնը Գր. Մագիստրոսի վերագրուած է։

ՆՀԲի Նախադրութին տեղիքս. «Թարգմանութիւնն երեւի լինել Գրիգորի Մա—

*վիտարոսի, ըստ խոստովանութեան նորա». Կ՚իմանայ* կասկածով *Գրիգորի վերագրուած։ Ինքը կը միտի Թարգմանութիւնը Ե. դարուն համարել։*

*Շաղոյեան իր գլխաւոր ուշադրութիւնը դարձուցած է Երկրաչափութեան սկզբնագրի վրայ. վերլուծելով բնագիրը կը յանգի այն եզրակացութեան, թէ Եւկլիդեայ Երկրաչափութեան հայերէն թարգմանութեան սկզբնագիրը նախաեւկլիդեան ըլլայ, հատակոտոր մը Լեւոնի կամ Թեւդիոս Մագնեսիացւոյ Երկրաչափութեան Տարերքի, որոնք կորսուած են։*

*Կարեւոր կը համարիմ անգլիերէն բնագրով ներկայացնել իր նկատումներն ու եզրակացութիւնը ի մասին* 50—167 *տողերու։*

In view of the observations made above, the present writer is convinced that (*a*) the Armenian MS is a fragment of pre-euclidean *Elements* written by Leon or Theudius of Magnesia (see Heath: *Manual of Greek Mathematics,* pp. 183—185) whose works on the *Elements* are lost. (*b*) The Armenian MS is the *first* specimen of pre-euclidean *Elements,* preserved through the medium of Armenian translation.

With regard to date of translation of the Armenian fragment close study of style and diction leads the present writer to believe that the translation may be as early as the fifth century.

3.

*Ս. Հայրապետեան, Անանիա Շիրակացու կեանքն ու գործունէութիւնը. Գիտական Նիւթերի Ժողովածու, Ա., էջ 17. Անանիա Շիրակացւոյ կը վերագրէ «Էվկլիդի Երկրաչափութիւնը հայերէն թարգմանութեամբ: Թէեւ ոմանք այս աշխատութիւնը վերագրում են Գ. Մագիստրոսին, սակայն այժմ կան հաւաստի փաստեր Շիրակացունը համարելու»: Չեն յիշուիր այդ փաստերը: Շիրակացւոյ կ'ընծայէ զայն նաեւ Տ. Թումանեան, անդ, տես* Т. Г. Туманян, О таблице полигональных чисел А. Ширакаци, *ի գիր՟ Գիտական Նիւթերի Ժողովածու, Ա.* (*Երեւան* 1941), *էջ* 54:

4.

*Ա. Գ. Աբրահամեան, Անանիա Շիրակացու Մատենագրութիւնը, Երեւան* 1944, *էջ* 75—77, *նկատողութեան առած է նաեւ «Էվկլիդէսի Երկրաչափութեան թարգմանիչը»: Այս առիթով անդրադարձած է իմ աշխատութեանս: Ան ընդունելի չէ գտած Գր. Մագիստրոսի տեղիքին իմ առաջարկած վերակազմութիւնը:*

ա. *«Մագիստրոսի մօտ, մեր կարծիքով, շատ պարզ է տուած թարգմանութեան մասին եւ հիմք չունենք կասկածելու նրա հաղորդած տեղեկութեան վրայ»:*

Բ. «Էվկլիդէսի Երկրաչափութիւնը Շիրակացուն վերագրելու մասին անհիմն է Ն. Ակինեանի միւս պնդումը եւս, որ իբր Մագիստրոսի լեզուն տարբերվում է Էվկլիդէսի Երկրաչափութեան թարգմանութեան լեզվից: Էվկլիդէսի Երկրաչափութեան լեզուն, մեր կարծիքով, ընդհակառակը, շատ ծանր լեզու է եւ ամենեւին նման չէ Շիրակացու լեզվին»: Օրինակ կը բերէ Երկրաչափութեան 108—114 տողերը, յառաջ բերուած տպագրութեան ինչ ինչ վրիպակներով:

Գ. «Վիճելի է Ն. Ա.ի միւս կռվանը եւս, որ իբր Էվկլիդէսի թարգմանութեան տեքստում կան մի շարք տերմիններ, որոնց գործածութիւնը Շիրակացուն է յատուկ: ...այդ տերմինների մեծ մասը, որքան մեզ յայտնի է, գործ են ածուած Ժ—ԺԲ դարի մատենագրերի մօտ եւ չեն հանդիպում Շիրակացու աշխատութիւններում (էջ 76—77):

Կան այս տեղ ինչ ինչ թիւրիմացութիւններ եւ անճիշդ կէտեր:

Ես ենթադրաբար Երկրաչափութեան թարգմանիչ համարած էի հայերէնագէտ յոյն Տիւքիկոսը եւ ոչ Անանիա Շիրակացին: Վերջինս չէր կրնար թարգմանիչ ներկայանալ, այնու որ դիամետրոս terminus technicus ան հայացուցած է տրամաչափ, տրամաչափական, հետեւելով յունարան Դպրոցի երկրորդ

*դասի ձեւած բառակերտութիւններուն, մինչ Երկրաչափութեան մէջ հինգ անգամ գործածուած է բառս* դիամետրովն (*կարգա՛* դիամետրովս) *տառադարձութեամբ իբրեւ փոխառութիւն*[1], *եւ մեկնուած Հայերէն դեղեցիկ բարդութեամբ* «Երկակտուր»: *Այսպէս նաեւ յն.* կենտրոն *տառադարձուած է* կենտրովն, *իմաստը տալով «միջոցք» բառով:*

*Հնարաւոր չէ նոյնպէս անոր թարգմանութիւնը վերագրել Պղատոնի գործերու Հայ թարգմանչին, Նոր Հելլենիստ Գրիգոր Մագիստրոսին, որ յունաբան Դպրոցի վերանորոգողն ուզեց ըլլալ, ինքնուրոյն ճաշակով:*

*Եթէ Երկրաչափութեանս* 165 *տողերը լեզուի եւ թարգմանութեան արուեստի տեսակէտներէ քննութեան առնենք, պիտի տեսնենք հոն փափուկ, դասական Հայերէնի նմանութեան ձգտող լեզու մը եւ յունարէն բնագրի ազատ, դիւրիմաց թարգմանութիւն մը: Եթէ այդ տողերու մէջ չհանդիպէին մեզի* ներգործել, պարագրել *եւ* պարունակել (*նաեւ* երկաճանչիւր) *բառերը, որոնք* 590*էն ետքը մուտ գտած են Հայ լեզուին մէջ, առանց վարանելու թարգմանութիւնը պիտի զետեղէի այդ թուականէն յառաջ, նոյն իսկ Ե. դարուն:*

---

[1] *Բառս ոչ Նոր Հայկազնեան Բառգիրքը եւ ոչ ալ Աճառեանի Արմատական Բառարանը ներս առած են բառերու շարքին մէջ:*

Եւ արդեօք անոնք ալ ժամանակի եկամուտներ չե՞ն։ Այս կասկածը կ՚արթննայ իմ մէջ այնու որ այդ բառերը բնագրին մէջ յունարէնէ ստրկական թարգմանութիւններ չեն եւ ոչ ալ թարգմանչին սեպհական արտայայտութիւններ։

Ներգործել յն. ἐνεργέω բառին ստրկական թարգմանութիւնն է, ազդեմ իմաստով. մեր թարգմանիչը յն. συνίστασθαι τρίγωνον, «եռանկիւն շինել» չէր կրնար թարգմանել. «կամիմք ներգործել երիս անկիւնս», այլ պարզապէս գործել (յօրինել, առնել). յունաբան մը պիտի թարգմանէր բաղադրեմ, շարադրեմ։

Պարագրեմ (տ. 125), պարագրութիւն (տ. 30). ստրկական թարգմանութիւնն է յն. περιγράφω բային. «պատել, բովանդակել» իմաստով։ Յոյն բնագիրը հոս ունի περιέχω, «պատել, պաշարել, բովանդակել»։ Ուստի թարգմանիչը, որ յաճախ պատեմ եւ բովանդակեմ բառերը կը կիրարկէ, նաեւ այս տեղիքները նոյն ձեւով պատեմ, բովանդակեմ, բովանդակութիւն (հմմտ. տ. 4, 36, 42 եւն) պիտի թարգմանէր։

Այսպէս նաեւ Պարունակեմ (տ. 32), պարունակեալ (տ. 43), պարունող, (տ. 47), պարունակող (տ. 49), որոնք πεοιέχω բայէն կազմուած են, պէտք է բովանդակել, բովանդակեալ, բովանդակիչ բառերով թարգմանած ենթադրել։

Եթէ մեր այս ենթադրութիւնը ստուգուի նորագիւտ ձեռագրով մը, կարող ենք Երկրաչափութեանս Թարգմանիչը նոյնացնել այն թարգմանիչին հետ, որ թարգմանած է Պտղոմէոս–Պապոսի Աշխարհագիրը, հաւանօրէն Ե. դարու երրորդ քառորդին: Նկատի պէտք է առնել, որ Պապոս իր գործին մէջ առած էր նաեւ Եւկլիդէսի Երկրաչափութեան մէկ մասը: Ինչպէս Աշխարհագիրն յետ ժամանակի տեսած է խմբագրութիւն (Անանիա Շիրակացի՞ն), նոյնպէս Երկրաչափութիւնս կրած է չարափոխութիւններ:

Ա. Աբրահամեան կը գրէ. «Էվկլիդէսի Երկրաչափութեան լեզուն, մեր կարծիքով, չատ ծանր լեզու է եւ ամենեւին նման չէ Շիրակացու լեզվին»: Եւ յառաջ բերելով ձախորդ նմոյշ մը Եւկլիդէսէն (տպագրական սխալներով), կ՚եզրակացնէ. «Այս ոչ թէ Շիրակացու, այլ Մագիստրոսի սովորական խրթնաբան լեզուն է» (էջ 76): Նմոյշը որ եւ է խրթնաբանութիւն չի բովանդակեր. մաքուր, պարզախօս, քերականական օրէնքներով թարգմանուած է. ե՛ւ այսօր նոյն բառերով եւ նոյն կարգով պիտի թարգմանուէր աշխարհաբարի:

Երկրաչափութեան լեզուն «նման չէ Շիրակացու լեզվին». նաեւ ես նկատած էի այս իրողութիւնը եւ թարգմանութիւնը չէի վերագրած Անանիայի, այլ անոր հայերէնագէտ վարժապետին, որ Տիւքիկոս կը կոչուի:

Եւ որովհետեւ Թարգմանութիւնս պարզախօս, մաքուր դասականաց հետեւող հայերէնով կատարուած է, մերժած եմ եւ կը մերժեմ անոր Թարգմանիչը Մագիստրոսն համարիլ։ Եթէ երբեք կարելի է այս լեզուն Մագիստրոսի լեզուին հետ համեմատել, մէկ նժարի վրայ փետուր եւ միւսին վրայ երկաթի կտոր մը պիտի տեսնէինք։

Հայերէն լեզուն ունի իր ժամանակագրութիւնը. գրական շրջանի իւրաքանչիւր դար ունի իր ուրոյն յատկանիշները, որոնք կը նպաստեն որ եւ է գրուածքի ժամանակը ճշդել, գոնէ մերձաւորապէս։ Այս կէտին եթէ ուշադիր ըլլար Անանիա Շիրակացու Մատենագրութիւնը հրատարակողը, կարգ մը գրուածքներ, ինչպէս «Յաղագս ամպոց եւ նշանաց» եւ «Աշխարհացոյցը» ներս պիտի չառնէր այդ հատորին մէջ։

5.

Եթէ Երկրաչափութեան Թարգմանութիւնը Է. դարէ յառաջ է, ի՞նչպէս պէտք է իմանալ Գրիգոր Մագիստրոսի ԻԱ. Թուղթին տեղիքս. «Բայց եւ զԵրկրաչափականն զԵւկլիդոսին սկսայ Թարգմանել» (էջ 66)։ Հարցմանս պատասխանը պիտի ըլլայ. կա՛մ Երկրաչափութիւնը երկու անգամ Թարգմանուած է. մին հինը, որ հասած է մեզի մէկ մասով. եւ երկրորդը՝ Գր. Մագիստրոսինը,

որ մեզի չէ պահուած. եւ կամ թիւրիմացութիւն մը կայ Մագիստրոսի տողերուն մէջ:

Ամէն ընթերցող, որ կը կարդայ Թուղթս, պիտի վկայէ թէ խրթնաբան է Մագիստրոս իր Թուղթին այս հատուածին մէջ, ուր միջանկեալ պարբերութիւններ իրար կը յաջորդեն: Կամ առաջին օրինակողը տողերու նախադասութիւն ըրած է եւ կամ Թուղթին հեղինակը ձեռագրին լուսանցքի վրայ յաւելուածներ կցած է եւ ապա օրինակողէն բնագրի մէջ առնուած: Այս թոհուբոհէն իմաստ մը հանելու համար վերակազմած էի բնագիրը պարբերութիւններու նախադասութեամբ, ուր «սկսայ թարգմանել» կը պատկանէր Պղատոնի թարգմանութիւններուն: Գայթակղեցան ոմանք եւ բողոքեցին: M. Leroy կը գրէր. «Հա՞րկ է ըսել, թէ մենք չենք կրնար ընդունիլ Գրիգոր Մագիստրոսի Թուղթին այս անհաւանական վերակազմութիւնը. եւ թէ մենք կը շարունակենք մնալ մեր յառաջուան կարծիքին վրայ» (էջ 44). այս ինքն Գրիգոր Մագիստրոսն է Երկրաչափութեան թարգմանիչը: Եւ Ա. Աբրահամեան կը բողոքէր. «Դժբախտաբար այսպիսի լուրջ տեքստաբանական ուղղում առաջարկելու համար Ն. Ակինեանը լուրջ կռվաններ չի բերում եւ այնպիսի տպաւորութիւն է ստացվում, որ նա ո՛չ թէ իր եզրակացութիւնը բղխեցնում է սկզբնաղբիւրից, այլ սկզբնաղբիւրը յարմարեցնում է իր եզրակացու-

թեանը։ Մագիստրոսի մօտ, մեր կարծիքով, շատ պարզ է ասված թարգմանութեան մասին եւ մենք հիմք չունենք կասկածելու նրա հաղորդած տեղեկութեան վրայ» (էջ 76)։

Եթէ Ա. Ա.ի «կարծիքով շատ պարզ է» արտայայտուած Մագիստրոս ի մասին Եւկլիդեայ թարգմանութեան, նոյնպէս «շատ պարզ է ասված» Պղատոնի գործերու թարգմանութեան մասին, եթէ «զերկուս մատեանսն Պղատոնի... սկսայ թարգմանել» եւ «գտեալ եմ եւ զԿալիմաքոսի... բայց եւ (գտեալ եմ) զԵրկրաչափականն զԵւկլիդոսին» իմանանք։

«Տուր իմաստնոյն պատճառս եւ իմաստասցի»։ Այն վերակազմեալ բնագիրը, զոր տուի, որչափ ալ բռնաքարշ դատուի, բաւական էր գոնէ խրթնարան համարուած հատուածին ճշգրիտ իմաստը ստանալու։ Հատուածի երեք-չորս պարբերութիւնները կ՚ենթադրեն յուսանցագրութիւններ. Թուղթին գրուելէն ետքը աւելցուած։ Այս տեղ միւսանգամ կը ներկայացնեմ բնագիրը, գծերով բաժնելով պարբերութիւնները.

«Վասն զի ոչ եմք երբեք դադարեալ ի թարգմանութենէ եւս. բազում մատեանս, զորս ոչ եմք գտեալ ի մեր լեզուս՝ զերկուս մատեանսն Պղատոնի, զՏիմէոսի տրամաբանութեանն եւ զՓեդոնին, յորս բոլոր ճառսն Նախագիտականին Աստուծոյն (տպ. այն) պարփակեալ կայ, եւ զայլս բազումս յիմաստասիրացն (զիմաստասիրի՞ն) — իւրաքան-

չիք մատեանքս այս մեծագոյն է քան զՏարեւոր Տօնականս — բայց եւ գտեալ (եմ ի) մեր խակ ի հայ լեզու գրեալ Թարգմանչացն՝ զգիրս Ողոմպիոդորոսի, զոր Դաւիթ յիշատակէ, կարի յոյժ սքանչելի եւ հրաշալի բանաստեղծութիւնս, մակաւասար բոլոր իմաստասիրական բանից. գտեալ եմ եւ զԿալիմաքոսի եւ զԱնդռօնիկեայն ի հայ լեզու. բայց եւ զԵրկրաչափականն զԵւկլիդոսին — սկսայ թարգմանել: Եւ եթէ...»:

Այս հատուածին գլխաւոր պարբերութիւնն է «Բազում մատեանս, զորս ոչ եմք գտեալ ի մեր լեզուս...», որուն բայն է «սկսայ թարգմանել»: Երկրորդ միջանկեալ պարբերութիւնն է «Բայց եւ գտեալ... գտեալ եմ եւ... բայց եւ (գտեալ) զԵրկրաչափականն զԵւկլիդոսին»:

Ուշադրութեան արժանի է, որ Գրիգոր Մագիստրոս Երկրաչափութիւնը կ'անուանէ «Երկրաչափականն Եւկլիդիսի», մինչ այդ աշխատութիւնը վերնագիր կը կրէ «Եւկլիդեայ գիրք տարերաց Երկրաչափութեան»: Եթէ ան ըլլար թարգմանիչը ճիշդ վերնագիրը պիտի տար «Եւկլիդեայ» անունը Եւկլիդէս եւ ոչ Եւկլիդոս պիտի գրէր:

---



# ԲԱՌԱՑԱՆԿ

